ԽԱՎԵԱՐ ԽԱՆԻ

# Թ[illegible]ՍԱՅԻՆ ՎԻՃԱԿԸ

ԵՒ ՀՈՆ

## ՇԱՏ ՄՏԱԿ ՇԱՀԵԼՈՒ ԴԻՒՐԻՆ ԿԵՐՊԸ



Գրեց

ՄԱՐԱԹ ԱՄԻՐԱԿՈՒՄ



Կ.ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐ. ԱՐԱՄԵԱՆ

1866

Ambalam Seraf

ԽԱՎԵԱՐ ԽԱՆԻ

# ՊՕՐՍԱՅԻՆ ՎԻՃԱԿԸ

Khiveoh Khan

ԵՒ ՀՈՆ

## ՇԱՏ ՍՏԱԿ ՇԱՀԵԼՈՒ ԴԻՒՐԻՆ ԿԵՐՊԸ



Գրեց

ՏԱՐԱԾ ԱՄԲԱԿՈՒՄ

Կ.ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐ. ԱՐԱՄԵԱՆ
1866

ԽԱՎԵԱՐ ԽԱՆԻ

# ՊՕՐՍԱՅԻՆ ՎԻՃԱԿԸ

ԵՒ ՀՈՆ

## ՍՏԱԿ ՇԱՀԵԼՈՒ ԴԻՒՐԻՆ ԿԵՐՊԸ



Մարդիկ աշխարհիս մէջ երջանիկ կեանք մը անցնելու համար՝ ընդհանրապէս շատ ստակ վաստըկելու ետևէ կըլլան. արդարև ասի ալ բնական բան մըն է, բայց շատերն՝ դիւրութեամբ ստակ վաստըկելուն կերպերը չիգիտնալնուն համար, մեզի պարտք համարեցինք որ գիտցածնիս սորվեցնենք:

Խավեար խանի Պօրսային բացուիլը տասը տարիի չափ եղաւ և հարիւր հազար հոգիի չափ (ամէն ազգէ ըլլալով) ասոր մէջ մտան ու ելան:

Հիմայ այստեղ, հոն մտնող մարդոց վիճակը քննենք և տեսնենք թէ որչափ շահ և օգուտ

ունեցեր են։ Այս մարդիկները ընդհանրապէս երեք աստիճանի կը բաժնուին . առաջինը՝ հազար ոսկիէն մինչև տասը հազար ոսկի ունեցող, երկրորդը՝ հազարէն մինչև հարիւր ոսկի ունեցող , իսկ երրորդը՝ հարիւրէն մինչև տասը ոսկի ունեցող . առաջինները որ տասը հազար ոսկիով ալիվրա կը խաղան . ասոնք Պօլսոյ տէրը ըլլալ կը բաղձան , երկրորդները որ հազար ոսկիով կ՚խաղան՝ եպարքոս ըլլալ կը բաղձան , և երրորդները որ հարիւր ոսկիով կ՚խաղան՝ առաջին կարգի վաճառական ըլլալ կուզեն։ Պօռսա ըստ ծնիս երկու հարիւր հոգի մէկ տեղ ժողվուած ընդարձակ՝ սրահ մըն է . Թէ որ Պօռսային բուն նշանակութիւնը իմանալ ուզենք՝ հալոց (փօթա) ըսել է , առաջինները երկաթի կը նմանցնենք որ քիչ մը ուշ կը հալին , երկրորդները՝ պղնձի (պագըր) որ քիչ մը շուտ կը հալին, երրորդները՝ կապարի (գուրշուն) որ ամենէն խիստ շուտ կը հալին . ասոնց մէջ խելքը գլուխը մարդ չիկայ ըսեմք նէ կարծեմք պիտի չ՚սխալիմք ,որովհետև իրենց բոլոր ապրանքը և ստացուածքը վտանգի ներքև դնելէն զկնի կեանքերնին ալ վտանգի ներքև կ՚դնեն, ստակը կորսնցուցած ատեննին խելքերնին ալ կը կորսնցունեն և մինչև անգամ կեանքերնին ալ կ՚կորսնցունեն . քանի

քանի մարդիկներ իրենց խելքերնուն պակա-
սութեանը համար այսօր թշուառութեան և աղ-
քատութեան մէջ ինկած են, և քանի քանի
մարդիկներ մինչև անգամ իրենց ընտանիքը
ծախելու եղած են. անմիտ մարդ, շատ ստակ
վաստկելու համար քու հանգստութիւնդ կ'աւ-
րես, քու խելքդ կը կորսնցնես, վերջապէս քու
կեանքդ կը զոհես ։ այս տեսակ մարդոց վրայ
աւելի խնդալու է քան թէ ցաւելու. որովհե-
տև այս տեսակ մարդերը ոչ խելքերու և ոչ
ալ մարդերու կը հաւնին. ինչ և իցէ ասոնք
մէկդի ձգելով՝ դիւրին և շատ ստակ վաստըկ-
ցունելու կերպերուն դառնանք:

Գալաթաի Պօրսան և իւր վիճակը առաջի-
նէն շատ տարբեր է հիմայ, խելացի և խիկար
իմաստուններ, գուշակիչ և անգուշակ մարգա-
րէներ, վերջապէս հին եգիպտական արհեստ-
ներուն ամէնն ալ ամբողջ հոն կրնաք գտնել.
Խավեար խանի մէջ այս մարդոց յատուկ ա-
նուններուն ԽՆԴԻՐ կըսուի որ հետևեալ ըն-
քանչելի արհեստներուն կը ծառայեն:

Ա. Երազ տեսնել
Բ. Թուղթ բանալ
Գ. Բակլա նետել
Դ. Թուաբանական նշաններով եռանկիւնի
գիծեր քաշել,

Ե. Ճերմակ պատերու վրայ քառանկիւնի կապարներ բակցնել և անկէ զօրութիւններ հանել,

Զ. Սբիրիթիզմ, այսինքն մէկ ուրիշ մը քընացնելով մէկ քանի օրուան բիաձաներ հարցընել և բօլիթիգի վրայօք մանրամասնաբար տեղեկութիւններ առնել, որ այս ամենէն ընտիր և ամենէն ապահովն է, թէ և ամենն ալ մի և նոյն անխելքութիւնը կ'կրեն իրենց մէջ, բայց և այնպէս սբիրիթիզմ ըսածնիս թէ որ հանդիպի նէ մարդս անով կրնայ չորս կամ հինգ օր խաբուիլ. շատ երկար բարակ մտածուած և խորհուած է որ ալիվրաճիութենէն ի զատ դիւրին և շահաւոր արհեստ չիկայ, և մանաւանդ որ հիմայ սքանչելի արհեստներով և գիւտերով ալ զարդարուած է, ասոնց դիւրութիւններն են որ շատերը Գալաթաի Պօրսան յաճախել կուտան. հիմայ տեսնենք թէ այս մարդիկները իրենց սքանչելիքները ինչպէս կը հաղորդեն ժողովուրդին:

Խնդիրներէն մէկը անցեալ օր իր շահադէտ բաժանորդներէն մէկուն ծրարեալ թուղթ մը կը հանէ կուտայ և կը պատուիրէ որ գիշերը պառկած ատենը բարձին տակը դնէ և անանկ պառկի, և սա ալ կաւելցնէ թէ՛ գիշերը թէ որ բարձր մեկէն ի մէկ երերայ, չըլլայ որ վախ-

նաս, և քեզի կէս կամ մէկ հաց մը պիտի տան, և քեզի կամ բարձր տեղ մը պիտի հանեն և կամ ցած տեղ մը պիտի իջեցնեն, և երկու կի-ներ պիտի գան քու դէմդ պիտի կայնին և մին-չև որ չի հրամայէս նէ չի պիտի խօսին եայլն։

Միամիտ շահադէտը այս պատուէրները լաւ ըմբռնելով տուն կուգայ և Խնդիրին պա-տուիրածին համեմատ բարձին տակը կը դնէ կը պառկի, գիշերը քունէն կարթննայ ՚ջուր կը խըմէ և դարձեալ կը պառկի, գլուխը վար դը-րածին պէս՝ բարձը սաստիկ կերպով կերերայ. այս մարդը վախէն «Տէր ողորմեա» ըսելու կելլէ, մայրը իւր մօտը պառկած ըլլալով, մի վախնար տղաս բան չիկայ կըսէ։

Տղան. կը դառնայ մօրը՝ երկրաշարժ կելլէ կոր կարծեցի, վախցայ կըսէ։

Մայրը. Խոշոր մուկ մ՚էր բարձիդ տակէն ելաւ կըսէ։

Տղան. Գիտեմ որ այս գիշեր իմ բարձս պի-տի երերայ, սակայն մուկ մտած ըլլալը չի գիտցայ կըսէ։ Այս միջոցին մայրը կելլէ և սաստիկ ապտակ մը կը զարնէ տղուն, վախէն խելքին եկած է կարծելով։

Տղան կը հարցնէ մօրը թէ ինչու զարկաւ։

Մայրը. Ես գիտեմ որ խելքիդ եկաւ անոր

համար զարկի կըսէ. վերջապէս Մայրը ու Տղան դարձեալ կը պառկին :

Հետեւեալ առաւօտուն Տղան կելլէ Թավեար խան կերթայ, և Խնդիրը անոր կը հարցնէ թէ աս գիշեր երազ տեսնր :

Ծահադէտը՝ գիշերուան մէջ պատահած մու-կին դէպքը կը պատմէ :

Խնդիրը՝ անիկայ մուկ չէր այլ տռւած նոււ-խեկիս զօրութիւնն էր, կըսէ :

Ծահադէտը՝ կը պնդէ որ խոշոր մուկն էր բարձը երերցունողը, և հետեւաբար մայրս ալ տեսաւ, կըսէ:

Խնդիրը. Էհ ուրեմն աս գիշեր ալ դիր որ անոր զօրութիւնը իմանաս, կըսէ:

Ծահադէտը. մի և նոյն խելքով երկրորդ գի-շերն ալ բարձին տակը կը դնէ և կը պառկի, բայց դարձեալ բան չի տեսնար :

Հետեւեալ առաւօտուն Խնդիրը կրկին ան-գամ Ծահադէտին երազ կը հարցնէ, և այն ալ բան մը չի տեսած ըլլալը կը յայտնէ:

Խնդիրը բարկանալով. Ուրեմն դու հաւատք չունիս. եթէ ունեցած ըլլայիր հարկաւ բաած-ներուս գոնէ մէկը տեսնելու էիր :

Ծահադէտը. Ես ամէն գիշեր առանց աղօթ-քի չեմ պառկիր, և ամէն առաւօտ կանուխ եկեղեցի կերթամ . . . . .

**Խնդիրը**. Արդարև կը հաւատամ որ ատանց վրայ մեծ հաւատք ունիք և անանկ ըլլալ պէտք է, սակայն իմ տուած նուսխէիս վրայ հաւատք չունիք կամ չունենալու էք որ ձեզի չի ներգործեց:

Ասոր նման շատ խօսքեր ընելէն վերջը՝ Խնդիրը կը պատուիրէ որ տուած նուսխէն իրեն դարձնէ. բայց Տահաղէտը միտքը կը դընէ որ ծրարեալ թուղթը բանայ և տեսնէ թէ՝ մէջը ինչ գրուած է, վերջապէս թուղթը կը բանայ և կը նայի մէջը որ քառանկիւնի կըտրուած կըճիճի (չէօմչէկ) մը կտոր և վրան ալ խէնդ ու մէնդ բաներ գրուած, կը նայի և կը զարմանայ մէկ քանի հոգիներու կը ցուցնէ, տեսնողներուն ամէնն ալ կը ծաղրեն ու կը խնդան. Տահաղէտ պարոնն ալ իրեն խաբուած ըլլալը ճանչնալով կը զղջայ, և ուխտ կընէ որ ալ ևս այս տեսակ յիմարական բաներու ականջ չի կախէ . . . . .

**Խնդիրները** առաւօտուն պօրսան չի բացուած **Խ**ավեար խանին դիմացը Գօմիսիօն խանին մէջ տեղը կուգան կը կայնին և ալիվրաճիներուն ըրած խօսքերնուն ունկնդրութիւն կընեն. անոնց խօսքերուն ամենը մէկտեղ բերելով անոնցմէ ըստ քմաց (չըգըրղընա) իմաստներ դուրս կը հանեն. օրինակի համար,

Ալիվրաճիները առաւօտուն Գօմիսիօն խանին մէջ ժողովելով զօնսօլիտէներուն վրայ տեսակ տեսակ կարծիքներ կը յայտնեն։

Ոմանք.

Լորտ Գլէրընտէն այն ինչ խօսքը ըրած ըլլալուն համար՝ ֆօնտօները պիտի բարձրանայ կըսեն։

Ոմանք.

Տրիւէն Տը Լիւիսը այս ինչ օրը ձիէն վար իյնալուն համար՝ ֆօնտօները պիտի իջնայ կըսեն։

Ոմանք.

Բարձրապատիւ Փոխ-արքայն այս տարի կանուխ ամարանոցը երթալուն համար՝ ֆօնտօները քիչ մը ժամանակ միջէւ պիտի երթայ կըսեն։

Մէկ ուրիշ մը.

Գարտաշ էկէրչի մուհարէպէ սահիհլէնիրսէ զօնսօլիտլէր 75 ղուրուշա զատար չըզաճագ կըսէ. վերջապէս Բաբիլոնի աշտարակաշինութեան ժամանակէն տարբերութիւն մը չունի. բոլոր խօսածնին և խորհածնին մէկզմէկու հակառակ։ Այս Ճճղիր կոչուած իմաստակ զուշակիչներն ալ վերոյիշեալ անճոռնի խօսքերը մէկզմէկու խառնելով երազ կը տեսնան, Թուղթ

կը բանան, եռանկիւնի գիծեր կը քաշեն ևայլն:

Ասոնց (Խնդիրներուն) ենթակայ կամ լաւ ևս գերի եղած Տահաղէտ Պարոններն ալ այս մարդոցը հրամաններուն համեմատ կառնեն և կամ կը ծախեն, բայց առնող և ծախողը վնաս կընէ եղեր հոգ չէ, Խնդիրը ետքը կ'ելլայ ուրիշ ճամբա մը կուտայ և ապուշ Տահաղէտն ալ կը համոզուի. անցեալ առաւօտ Խնդիրին մէկը կայնէր ուրիշ մէկու մը գուշակութիւններ ըրած ատեն անդիէն Կեսարացի մարդուն մէկը ասոնց ըրած խօսքերնուն ականջ կը դնէ. այն օրն ալ դիպուածը անանկ կը բերէ որ բիաձան Խնդիրին գուշակութեանը համեմատ կը բարձրանայ. յիշեալ Կեսարացի տղան ալ կը նայի որ Խնդիրին խօսքը ճիշդ ելաւ, միտքը կը դնէ որ երեք հարիւր ոսկիի չափ դրամագլուխ դնէ և Խնդիրին խօսքին համեմատ գործէ, ուստի այն իրիկունը Խնդիրը մէկ կողմ կը կանչէ և իւր դիտաւորութիւնը կը յայտնէ. Խնդիրն ալ գետնէն ստակ գտածի պէս ըլլալով ուրախութենէն կը մարի . . . .

Երկու օր ետքը Կեսարացի տղան 300 ոսկին կը բերէ և Խնդիրը մէկ կողմ քաշելով անոր տուած հրահանգին համեմատ կսկսի գործել. մէկ երկու շաբաթ շարունակ գործերը յաջող կերթան և քիչ մը ետքը ձախորդութեան կը

դառնայ, գրեԹէ մինչև այն օրը ինչ որ շահեր էին նէ նոյնչափ ալ վրայ կուտան կամ կ՚կորսնցունեն , Կեսարացի տղան այն ատիճան այս մարդուն խաբուեր է որ բոլոր դրամազլուխը կորսնցունելէն ի զատ նոյնչափ ալ պարտքի տակ իյնալու ըլլայ դարձեալ այս մարդուն վերայ իւր գաղափարը պիտի չի փոխէ, սքանչելագործ խնդիրն ալ շաշխըն մը քունեցինք ըսելով քիԹէն կը բռնէ կը խաղցնէ, վերջապէս 300 ոսկին ճիշդ չորս ամսուան մէջ կըլմննայ, Կեսարացին իւր կրած մնասին համար փոխանակ Խնդիրին հետ կռուելու՝ Խնդիրը Կեսարացիին հետ կը կռուի այսպէս,

Խնդիր. Պէ զարտաշ լիքիտասիօն ռէփօռ օրտուզճազ նէչին մալ ալըեօրսուն , պէն սանա ռէմէտիմ մի Թէլէկրաֆըն սուուզ օլտուղունու , պու էօյլէ պիր իշ տիր քի էկէրչի պիզտէն էյիլէրի (դեւերը) պիր ռէֆա կիւճէնտիրիլսէք սալա պարըշամայըզ . պէն օնլարը կիճէ սապահա զատար ԹիւԹսիլէր իլէ տավէԹ իտէրիմ, վէ եարըը կիճէյէ զատար օզուր տուվա իտէրիմ, պէնիմ էմէկիմէ եազըգ տէյիլ մի . . . .

Կեսարացին. Խըռսըզանմա ա զուզում, սէն պանա նասըլ սէօյլէտին իսէ պէն էօյլէ եափտըմ, պու կիւնէ զատար սէնին սէօզիւնտէն տըշարը չըգմըղըմ վար մըյըմը, զարարը

եօգ փարապար կիթտի իսէ պէնիմ ճանըմ սաղ օլսուն, պէն տահա կէթիրիրիմ. . . . . խանտաքի ստալարըն իքիսինի սաթաճաղըմ, պու տէֆա 500 լիրա կէթիրէճէկիմ սանա, զարար տա օլուրսա վազիֆէնտէ օլմասըն, եալընըզ իտէճէք իսթիխրաճլարընըզ (գուշակութիւն) նօզթասը նօզթասընա օլսուն, սահաթլարընը շաշըրմայասըն, թիւթսիւլէրի վազթինտէ եթիշտիրէսին, տուվանը վէ օզումանը գուսուր իթմէյէսին. օրուճլարընա մուզայէթ օլասըն, վէ պիր քաչ կիճէ տէ սէնինքինին եանընա ուղրամայասըն.

Խնդիր. Էյի ամմա շիմտի իրատլար փարա իթմէեօր. ստալարընը նմսըլ. սաթաճագսըն. ալըճըտա չըգարսա տախի գըրըք ֆիաթլարլա ալմազ իսթէյէճէքլէր . . . .

Կեսարացին. Սէն վազիֆէ իթմէ, պէն օնլարը պու հաֆտա մութլագ սուրէթտէ սաթարըմ:

Վերջապէս Կեսարացի տղան սեննակները չի կրնար ծախելով սարաֆին մէկուն վրայ կը դարձնէ և 38000 դուրուշ կը վերցնէ, և անենայն անապարանօք Խավեար խան կուգայ և ախվրաի չուվանը ընելով կակսի խաղալ: Խնդիրը իւր բոլոր ճիգը կը թափէ սքանչելեաց նկատմամբ պակասութիւն մը չընելու համար, և արդարև դիպուածը և բաղդը կօգնեն և մէկ

տարուան մէջ 2000 լիրաի տէր կըլլան, թէև Կեսարացիին բարեկամներէն շատերը զինքը շատ կը համոզեն որ ալ ևս ալիվրաճութիւն չընէ. բայց և այնպէս փոխանակ իւր բարեկամներուն մտիկ ընելու՝ հետևեալ պատասխանը կուտայ:

« Միզ պանա նասիհաթ վէրիյօրսընըզ խավեար խանը պըրագմազ իչի՛ն, սիզին իթտիկինիզ պանա տօսթլուգ տէկիլ տիր. պէն ալիվրատա փարա գազանմանըն թէքմիլ մատէնինի պուլտում, եալընըզ իշ եափմաեօրում, եանըմ սըրա սէնաաթքեար պիր խնդիր վարտըր օնուն թալիմաթլարըյըլա իշ եափըեօրում, հէր նէ քի սէօյլէյօրսա թըպգըսը օլուեօր, պիր պուչուգ սէնէտիր քի պունլարըն փըրօվասընը խտէյօրում, արթըգ հիչ շիւփհէմ գալմատը...»

Կեսարացիին բարեկամներէն մէկը այս խօսքերուն կը համոզուի և մեկ քանի հարցումներ ընելով գոհացուցիչ պատասխաններ կընդունի, ուստի ինքնիրենը կ՚որոշէ որ կնկանը ունեցած ժլմասները ծախելով ալիվրաճիութեան սկսի, իրիկունը տուն կերթայ և կնկանը ուրախ զըւարթ դիտաւորութիւն կը յայտնէ, խելացի կընիկը այս բանին բոլորովին դէմ կը կենայ, մարդը կաշխատի որ կնիկը համոզէ, կնիկը չի համոզուիր. — Վաճառականութիւն ընելու

որ ըլլաս նէ էլմաններս կուտամ, բայց սակայն այսպիսի խախուտ և վտանգաւոր գործի մը համար Թըրնախս անգամ չեմ տար կըսէ : Մարդը սաստիկ կը բարկանայ սակայն իւր հրեշտակաբարոյ կնոջ սիրտը երբէք չի խոցէր, և իւր նպատակն ալ կը փոխէ դարձեալ իւր գտնուած գործին մէջ մնալով:

Բայց 2000 լիրա շահող Պ. Կեսարացին կրկին անգամ ալիվրաճիութեան կսկսի, և կորսնցունելով ու շահելով երեք տարուան մէջ 5000 լիրա կ'շահի. Խնդիրը կուզէ որ ալ իւր ընկերէն զատուի և ինքնիրենը գործէ, վասն որոյ հաշիւները տեսնելով իւր բաժնին 1300 լիրա կը մնայ և ամենը ամբողջ առնելով կը բաժնուի: Խնդիրը իւր գործի սկսելուն առաջին օրը 30 ոսկի կը կորսնցունէ, հետևեալ օրը 5000 հատի համար 70 ոսկի երկու օրուան խսֆիլաճց մը կուտայ, այն երկու օրերն ալ բիաձան շարունակ հինգ փարայի վրայ խաղալով միզկռ կերթայ և տուած 70 ոսկին մէջ կը խաղայ, երրորդ օրը տասը հազար հատ, ուզենէ 35 ղուրուշէն տալու համար երկու օրուան համար 63 ոսկի պախշիշ կուտայ, հետևեալ օրը 29—10 փարա Թէլէկրաֆ մը գալով երկու օրն ալ 33 ½ ի վրայ կը դառնայ բիաձան; հիմակու հիմայ մէկ շաբթուան մէջ կորսնցուցա-

2.

ծը 163 լիրա կըլլայ, իւր տեսած երազներուն և բացած Թուղթերուն սքանչելիքներովը աղէկ կը հասկնայ որ ֆօնտօները խիստ պիտի իյնան, ուստի այդ խելքովը 33 ղուրուշ 10 փարայէն 30000 հատ ապրանք կը ծախէ և շատերն ալ համոզելու կաշխատի որ Թուղթերը պիտի իյնան ապրանք ծախեն. մէկ երկու ապուշներ աս մարդուն խօսքին հետևելով անոնք ալ կը ծախեն, այն գիշերը՝ վաղն առտու Թէլէկրաֆը պաղ պիտի գայ ըսելով ձեռքովնուն դրածի պէս ուրախ կըլլան, հետևեալ առաւօտուն վազելով քրտնելով կուգան և կախուած Թէլէկրաֆին կը նային որ բոլորովին հակառակ է, այսինքն փոխանակ 27 ղուրուշ գալու՝ 30 ղուրուղ 30 փարա եկեր է. ասոնք մէկզմէկու սիրտ տալով կսեն, անշուշտ պաղ Թէլէկրաֆ եկած է, սակայն այսօր չի հանեցին նէ վաղը անպատճառ դուրս կը հանեն ևն. ևն.

Անոնք այս խելքին վրայ Թող ըլլան, միւս օրը Թէլէկրաֆը 31 ղուրուշ կուգայ, Թուղթ բանալով՝ երազ տեսնելով՝ տավէթ ընելով ալ խենդ կը դառնան, ասոր վրայ խնդիրները մէկտեղ ժողովելով Ընդհանուր ժողով կը կազմեն որ նոյն իրիկունը ամէն խնդիր գալիք Թէլէկրաֆներուն և դարձած փոլիԹիգներուն աղէկ ուշադրուԹիւն ընեն որպէս զի ըրած վը-

նաւերուն տեղը լեցնեն, այսպէս որոշում ը-
նելնէն վերջը ժողովը կը ցրուի, ամէն մարդ իւր
տունը կը դառնայ. այն գիշերը ոմանք մինչև
կէս գիշեր և ոմանք ալ մինչև առաւօտ կաշխա-
տին և զուշակութիւններ կընեն, ամէն մարդ
իրենց ըրած զուշակութիւններուն բոլորն ալ
զատ զատ Թուղթերու վրայ կառնեն, և հետև-
եալ առաւօտուն Խնդրոց դիւանին կը յանձ-
նեն. դիւանը խկոյն ժողով կը կազմէ և գրի
առնուած զուշակութիւնները ու մարգարէու-
Թիւնները ժողովին դիտողութեանը կը յանձ-
նէ: Ժողովը բաւական ատեն դիտողութիւն և
խորհրդածութիւն ընելէն վերջը անմիջապէս քը-
վէի տակ կը ձգեն, և քուէարկութիւն ըլլալով
մեծազոյն մասամբ ֆօնտօներուն վար իջնալը
կը յայտնեն, ասոր վրայ Խնդրոց դիւանը ան-
միջապէս իւր բաժանորդներուն աներևոյթ կեր-
պիւ յայտարարութիւններ կը ցրուէ, (խնդիր-
ները յաւէտապէս բաժանորդներ ունին որ ա-
մէն ամիս տուրք կը հատուցանեն) և բաժանորդ-
ներուն ամէնն ալ մէկ սրտով և մէկ խելքով ապ-
րանք ծախելու կելլան, և ասոնց բոլոր կար-
ծեացը տեղեակ եղող խելացի մարդիկները ա-
սոնց վրայ կը խնդան, Թէլէկրաֆները ամէն
օր մէկզմէկու վրայ 20—30 փարա բարձր կու-
գան, այս մարդիկները խորհուրդ խորհրդի

վրայ կը բարդեն, գիշերները քուն չունին, ցերեկները հաց ուտելու ախորժակ չունին, մարդու հետ նստելու ելլելու կամ երկու խօսք ընելու տրամադրութիւննին բոլորովին կորսնցուցեր են, (Թէև Գօրսայի մէջ գործ ընողներուն ամենն ալ մի և նոյն ախտերուն ենթակայ եղած են) տուն կերթան իրենց ընտանեացը հետ կատարեալ յարաբերութիւն չեն կրնար ընել, վասըն զի խելքերնին գլուխնին չէ, ինչ ընելիքնին չեն գիտեր, գիշերները կ'երազեն, ցերեկները կը զառանցեն և առտուները կը ղօղանչեն . . . . . Ասդին ալ ուրիշ խումբ մը կեցած— պայըլանլարա սու — կաղաղակեն, որովհետև ֆօնտօները կը հատնի և իրենց խելքովը գործ տեսնողներուն ալ ստակները կը հատնին, որը Թէլլալութեան կը ծառայէ, որը ջուր կը ծախէ, որը ինքզինքը ծովը կը նետէ և սաանկով շատերը կը Թշուառանան և ողորմելի վիճակի մը մէջ կիյնան, (ԱՅՍ ՄԱՐԴԻԿՆԵՐՈՒՆ ԸՆՏԱՆԵԱՑԸ ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ . . . . .)

Այս ատեններս ամենէն ազատամիտ և ամենէն խելացի կարծուած մարդուն մէկը Թավեար խան կուգայ և ալիվրանճուԹեան ապահով ճամբան սովրելու եւնէ կըլլայ, անոր սաոր կը հարցնէ խորհուրդ կուտայ և խորհուրդ կառնէ, կը լսէ որ այս ինչ մարդը զօնսօլիտճուԹիւն

ընելով խաղխըշմիշ է եղեր, միւսը փառաւոր տուն մըն է շինէր, մէկ ուրիշ մը 50000 դուրուշի կնկանը պրօշ մը շիներ է, և այլն և այլն և հարկաւ ով ալ ըլլայ սանկ մեկէն ի մէկ հարուստ ըլլալու պիտի փափաքի, այս խելացի կարծուած մարդն ալ այս գործերուն վրայ ութ և տասը օր մտածելէն վերջը ալխիմիականութեան սկսելու կայանք կուտայ:

Ուստի Յավեար խան կերթայ և այն միջոցին նոր բարեկամ մը կը հանդիպի իրեն, կելլեն միատեղ սրճարանը կերթան և այս գործին վրայ մէկ երկու ժամ խօսելնէն զկնի՝ նոր բարեկամը խոստովանաբար հետևեալ գաղտնիքը և դիւրին ճամբան կը հաղորդէ.....

Ասկէ հինգ տարի յառաջ Եւրոպացի բնագէտներուն մէկէն սքանչելի արհեստ մը սովրեցայ որ ամէն գաղտնիք կը յայտնէ և ամէն ապագայն կը գուշակէ. Թէ որ դուն այս գործը ընելու միտում ունիս նէ ես ձեզի ամէն առաւօտ կանուխ բիաձաին ինչ ըլլալը իմաց կուտամ, բայց այս գաղտնիքը ուրիշ մարդու պիտի չի հաղորդես:

Ազատամիտը. Ինչպէս կըլլայ որ գաղտնիք կըյայտնէք և ապագայն կը գուշակէք, այս տեսակ գործերը իմ խելքիս դէմ կը տեսնեմ և մանաւանդ որ բնութեան մէջ անանկ արհեստ

մը դեռ գտնուած չէ որ գաղտնիք իմանայ:

Բարեկամը. Բնութեան մէջ անանկ գաղտնիքներ կան որ այսօր հազարին մէկը անգամ յայտնուած չէ, բայց և այնպէս իմ ընելիք գործիս մէկ փորձը ձեր առջևը կը նետեմ որ անշուշտ պիտի համոզուիք. վասն զի ասկէ երեք տարի յառաջ մի և նոյն գործը ըրի բաւական ստակ շահեցայ, սակայն հիմայ աստանկ գործեր ըրած չունիմ, որովհետև կարօտութիւն չունիմ . . . . .

Ազատամիտը. Քանի որ դուք այսչափ վըստահութիւն ունիք այս գործին նէ ես ալ ձեզի հաւատարմութիւն ունիմ, բայց միայն սա կը խնդրեմ որ ընելիք գործդ ինչ որ է նէ մանրամասնաբար պատմես ինծի:

Բարեկամը. Շատ աղէկ մտիկ ըրէ որ պատմեմ, 18—20 տարեկան խարտեաշ (գուզրալ) պատանի մը կը բերես՝ ես անիկայ մանեաթիզմով կը քնացնեմ և յետոյ բիւձափ կամ ուրիշ նիւթերու վրայ հարցումներ կընեմ, անի ալ մէկ քանի օրուան ըլլալիքը մեզի կիմացնէ:

Ազատամիտը. Այդ պատմած գործերնիդ խելքս չի կրնարկոր հասնիր, այդպիսի բան չի կրնար ըլլալ, գաղտնիք իմանալ . . . . . զարմանալիսքանչելիք մըն է այդ. բայց բարեկամ, ներեցէք ըսելուս, չըլլայ որ խաբուած ըլլաք,

քանզի պու տուանա ամին տէյէմէյօրում։

Այս անձին՝ վերջապէս խելքը չի հասնիր այս գործին, բայց գոնէ փորձ մը ըրած ըլլալու համար 20 տարեկան խարտեաշ պատանի մը կը բերէ և մարդուն կը յանձնէ մարդը աս պատանիին սթիրիթիզմ կընէ այսինքն կը քնացնէ և կըսկսի հարցնել։

—Վաղն առտու բիաձան քանի փարաէն պիտի բացուի։

—34 ղուրուշ 25 փարաէն. սակայն ցերեկը Թելէկրաֆ մը պիտի գայ և մինչև 36 ղուրուշ պիտի ըլլայ։

—Իրիկունը քանի փարա պիտի գոցուի և հետևեալ առաւօտուն քանի փարա պիտի բացուի։

—Իրիկուան 35 ղուրուշ 30 փարա պիտի մնայ, բայց միւս առաւօտուն 34 ղուրուշէն պիտի բացուի։

—Պատերազմ պիտի ըլլայ թէ ոչ, Իտալիա Վենետիկին պիտի կրնայ տէր ըլլալ . . . . .

—Պատերազմ պիտի չըլլայ. սակայն Իտալիա Վենետիկը ուշ կամ կանուխ պիտի գրաւէ։

Եւ դեռ ասոր պէս ունայն բաներ հարցնելէն վերջը պատանին կարթնցնեն, Ազատամիտ պարոնը այս հիանալի գործին կը յափշտակուի, սակայն գործը աղէկ մը սաուցելու հա-

մար՝ հետևեալ առաւօտեան բիաձարին կապասէ որ պատանւոյն ըսածին պէս պիտի ըլլայ Թէ ոչ: Ուստի հետևեալ առաւօտուն կանուխ Խավեար խան կերԹայ և պատանւոյն ըսածին համեմատ կը բացուի բիացան, այսինքն ճիշտ 34 ղուրուշ 25 փարա. Ազատամիտ պարոնը միտը բերանը կառնէ ու կապշի կը մնայ, և ցերեկուան բարձրանալուն կսպասէ, մէյմ՚ալ յանկարծ 31½ Թէլէկրաֆ գալով՝ ԹուղԹերը 36 ղուռուշ կըլլան. այս մարդուն ալ տաբակոյսը չի մնար և կը համոզուի որ բնուԹեան մէջ այսպիսի գաղտնիքներ կան եղեր, վասն որոյ ամենայն վստահուԹեամբ գործի կ սկսի, սքանչելագործին հետ պայման և դաշնադրուԹիւն կընեն որ ինչ շահ ըլլայ նէ կէսուակէս բաժնուի բայց մնասի անուն ամեններին չեն գրեր, որովհետև ասոնց համար մնաս չիկայ:

Այն օրը կրկին անգամ պատանին կը բերեն և պէտք ըլլալիքները կը հարցնեն և ինչ պատասխան որ տայ ԹուղԹի մը վրայ կ՚օրինակեն, խեղճ բայց կարծեցեալ ազատամիտը փոխանակ չորս կամ հինգ անգամ փորձ ընելու՝ մէկ անգամ կընէ և ահա այն տեղը կ՚սխալի:

Հինգ հարիւր ոսկի դրամագլուխ կը դնէ և առաջին օրը 50000 ԹուղԹը մեկէն կը ծախէ, այն օրը կը տեսնան որ պատանւոյն ըսած խօս-

քերուն բոլորովին հակառակը կըլլակոր, այս մարդը յիսուն հազար թուղթը ծախելէն անմիջապէս ետքը 30 փարա կը բարձրանայ, Վալութաճին զափարօ կուզէ, ապա թէ ոչ զոցեմ պիտի կըսէ, մարդը ինչ ընելիքը կը կորսնցունէ, վերջապէս Վալութաճին կը տեսնէ որ քիչ մը ալ սպասելու որ ըլլայ՝ ինքը պիտի վնասուի, խսկոյն 42000 ղուրուշ վնասովը կը զոցէ և բերած հինգ հարիւր ոսկի դրամագլխէն ընդ ամենը 80 ոսկի առնելով կը դառնայ ետ, բայց սքանչելագործը բոլորովին աներևոյթ կըլլայ սա հետեւեալ նամակով . . . . :

« Տիրայէթլու . . . . . Աղա

« Իլք իշիմիզի փէք միւսէյիպճէ Թութառուղունուզ իչիւն չօգ զիատէ աճընըրըմ, էկէրչի 50000 մալ սաթմանըզ սբիրիթիզմէ կիւվէնէրէք խոփ խսէ, եանըլտընըզ. զիրա սբիրիթիզմ տէնիլէն էօյլէ պիր սըր սէնաաթ տըր քի հիչ պիր վազըթ թամահ գալտըրըմազ. հէր նէ հալ խսէ պու իշին հագգընա չօգ զիատէ աճը տու-

եարագ ճան ու տիլտէն սէօյլէրիմ քի թետիղինիզ զիանըընըն պէտէլինի պիր ան էվվէլ Հազթաալա քէնտի տօլտուրսուն ամին.....

* * *

Կերևայ որ այս սքանչելագործը չէ թէ չարամտութեամբ ըրած է այլ ինքն ալ խաբուած ըլլալով այս գործին ձեռնամուխ եղած է, վասն զի շատ սանկ մարդիկներ կան որ այս տեսակ սքանչելիքներու հաւատք կընծայեն և դիմացիններին ալ հաւատացնելու կը ճգնին, առանց մտածելու թէ դեռ բնութեան անհուն ծոցէն այս տեսակ արհեստներ դուրս ելած չեն և կամ երբէք ելելիք չունին:

Խավեար խանի պօրսան յաճախողները վերոյիշեալ պատմութեանց ճշմարտութեանը տարակոյս չունին, բայց սակայն անոնք որ պօրսան ինչ ըսել ըլլալը չի գիտեն՝ հարկաւ անոնց քիչ մը դժուարահաւատալի պիտի ըլլայ, ուստի անոնց համար ալ կըսենք որ գոնէ փորձի մը համար բայց առանց գործ մը ընելու շաբաթի մը չափ պօրսա թող երթան, հաւաստի եմ որ ամէն բան պիտի իմանան, կամ ան է որ իրենք ալ հոն պիտի մնան և կամ գզուանոց եա պիտի դառնան. որովհետև մագնի-

տակաւ զօրութիւն կայ հոն որ մարդս շուտ իրեն կը քաշէ, ասոր համար ով որ իրեն կապուինի նէ թող ան երթայ, որ ետքը մեզի պատճառ չի բռնէ, ցաւալին սա է որ դժբաղդաբար շատ մարդիկներ կան որ այս ախտին ենթակայ եղած են, շատ հարուստներ աղքատացած, շատ ընտանիքներ թշուառացած, վերջապէս շատ ընկերութիւններ և տուներ փլած ու քայքայուած են, բայց զարմանալին սա է որ հոն մտնող և վնաս կրող փորձառու մարդիկները շատ անգամ նորամուտ շահադէտները կ՚խրատեն, կը համոզեն և իրենց գլխուն եկածը ամէն պարագաներով կը պատմեն, դարձեալ նորամուտները ականջ չեն կախեր. մինչև որ իրենք ալ այն վնասներու ենթակայ չըլլան, այս արհեստը ուրիշ բան մըն ալ ունի, այն է որ մարդս սարսափելի կերպիւ շուայլ կընէ, և անկէ ետքը թէև աղքատանայ ալ ան մարդը անկարելի բան է որ խնայողութեան հետևի:

Արդ՝ գրոյս հեղինակը այս գործին մէջ խիստ փորձառու եղած ըլլալուն համար անհրաժեշտ պարտք կը համարի իւր ազգակցացը պէտք եղածը պատմելէն զկնի միանգամայն իմացնել որ այս տեսակ վտանգաւոր և մահաբեր գործերու մէջ չի մտնուին և որչափ կարելի է

նէ եա փախչին. և չ՚ուզէր նաև որ այս տեղ այն մարդոց անունները տայ. որոնք իրենց գտնուած վիճակնուն զոհ չըլլալով շատ ստակ վաստկելու և մեծ փառքերու հասնելու համար իրենց ձեռքի եղածը կորսնցունելէն զկնի Թըշուառութեան, չքաւորութեան, նա մանաւանդ յուսահատութեան անդունդները գլտորեցան յակամայս. եթէ մարդ մը կանոնաւոր արհեստներու, վաճառականութեան և երկրագործութեան հետևելով իւր ստացուածքը կորսնցունէ նէ այնչափ ցաւ չի զգար, որչափ որ զարշելի ալիվրաճութեան մէջ:

Արդէն մեր ազգին գրեթէ բնական եղած Թշուառութիւնը օրքանզօր աւելնալու վրայ է, Թէ որ կուզենք այս Թշուառութեանց վերջ մը տալ՝ համասիրտ և համախորհուրդ ըլլալով օգտակար միջոցներ ձեռք առնումք որպէս զի ազգին ներկայն բարւոքելու և ապագայն անդորրելու սրբազան և նուիրական սկզբունքը ի գործ դրած ըլլանք, և Թէ որ մեր ունեցած պարտքերը այս օրուընէ կատարելու կամք չընենք՝ աղէկ գիտնանք որ մեր հիմակուան կրած Թշուառութիւններնէս աւելի և շատ աւելի մեր զաւկըները ու Թոռները պիտի կրեն, վասն զի արտերը մինչև որ այս օրուընէ չի սերմանենք նէ վաղը չենք կրնար հնձել, ասոնք

ալ աշխատութեամբ և գործելով կրնայ ըլլալ, Թուլութիւն ու ծուլութիւնը մէկ կողմ ձգենք և ձեռք ձեռքի տանք, հարուստներնիս ստակով, գրագէտներնիս գրիչով, խելացիներնիս խելքով և ահա այն ատեն ազգայնութեան նաւը ամէն կերպերով զարդարուած կըլլայ և սահմանեալ նաւահանգիստը անվտանգ կրնայ հասնիլ:

« Որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ »

